Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 9 ՄԱՅԻՍ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ Յ—52—78։*





# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*Մեր երկրի աշխատավորները սիրով և գոհունակությամբ ընդունեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը։*

*Այդ պատմական որոշումից անմիջապես հետո, արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ամենուրեք լայնորեն ծավալվեց և այժմ էլ ծավալվում է սոցիալիստական մրցություն՝ Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձը արտադրական նոր հաջողություններով նշանավորելու համար։*

*Արդյունաբերության և գյուղատնտեսության միլիոնավոր աշխատողներ մտնելով մրցության մեջ, պարտավորություններ են ստանձնել արտադրական պլանները կատարել ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով։ Արդյունաբերության ձեռնարկությունների*

կոլեկտիվները հաշվի առնելով իրենց հնարավորություններն ու ռեզերվները պարտավորություն են ստանձնել պլանից դուրս երկրին տալ մեծ քանակությամբ արտադրանք։ Օրինակ, Մոսկվայի մարզի Վոսկրեսենսկի Կույբիշևի անվան քիմիական կոմբինատի կոլեկտիվը պարտավորվել է ոչ միայն ժամկետից շուտ կատարել համախառն արտադրանքի պլանը, այլև պլանից դուրս թողարկել 12 հազար տոննա հանքային պարարտանյութ, խնայել 2.500 տոննա վառելիք, հումքի և նյութերի հիմնական տեսակների ծախսումը, պլանի համեմատությամբ, նվազեցնել 300 հազար ռուբլի գումարով, իսկ էլեկտրաէներգիայինը՝ 500 հազար կիլովատ-ժամով։ Նույն կոլեկտիվը պարտավորվել է ինքնարժեքի իջեցումից ստանալ առնվազն 1,5 միլիոն ռուբլու արտապլանային խնայողություն և 2 միլիոն ռուբլու խնայողություն՝ ռացիոնալիզատորական առաջարկների ու գյուտերի արմատավորումից։ Վորոնեժի Ս. Մ. Կիրովի անվան կաուչուկի գործարանի կոլեկտիվը հաջողությամբ կատարելով վեցերորդ հնգամյակի առաջին տարվա պլանը, պարտավորություն է ստանձնել 1957 թվականի պլանից դուրս թողարկել 500 տոննա կաուչուկ և խնայել 350 տոննա սպիրտ, 500 հազար



կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, արտադրանքի ինքնարժեքի իջեցման հաշվին պլանից դուրս ստանալ 2 միլիոն ռուբլի խնայողություն և արտադրության մեջ ռացիոնալիզատորական առաջարկների ու գյուտերի արմատավորումից՝ 4,5 միլիոն ռուբլի խնայողություն և այլն։

Համաժողովրդական տոնը՝ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը արտադրական նոր նվաճումներով դիմավորելու համար բարձր պարտավորություններ են ստանձնել նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողները։ Ահա, օրինակ, Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը, որը մտնելով Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցության մեջ, պարտավորություն է ստանձնել տարեկան պլանը կատարել մինչև դեկտեմբերի 23-ը, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2 տոկոսով, տնտեսել 300 տոննա հումք, 500 տոննա վառելիք, 800 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ռացիոնալիզատորական առաջարկների միջոցով ստանալ 4,5 միլիոն ռուբլու խնայողություն։

Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի Հայէլեկտրո գործարանի կոլեկտիվը պարտավորվել է

ժամկետից շուտ կատարել տարեկան պլանը և պլանից դուրս երկրին տալ 10 միլիոն ռուբլու էլեկտրասարքավորում, յուրացնել երեք տիպի նոր կոմպլեքսային տրանսֆորմատորային ենթակայանների թողարկումը։

Երևանի Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը պարտավորվել է տարեկան պլանները ժամկետից շուտ կատարելու հետ միասին տնտեսված հումքի և նյութեղենի հաշվին երկրին տալ լրացուցիչ 7.000 ավտոդող, անցյալ տարվա համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 7 տոկոսով։

Այժմ նշված գործարանների կոլեկտիվները պատվով են կատարում իրենց խոստումը։ Նրանք ամեն ամիս ոչ միայն կատարում են արտադրական պլանները, այլև պլանից դուրս երկրին տալիս են տասնյակ հազար ռուբլու արտադրանք։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի փառապանծ 40-րդ տարեդարձը աշխատանքային նոր հաջողություններով նշանավորելու համար ջանք չեն խնայում նաև գյուղատնտեսության աշխատողները։ Նրանք ձգտում են 1957 թվականը դարձնել բարձր բերքատվության և բարձր մթերատվության տարի։



Սմոլենսկի մարզի գյուղատնտեսության աշխատողները պարտավորություն ենստանձնել 1957 թվականին պետությանը հանձնել առնվազն 2 անգամ շատ միս, այդ թվում 4—5 անգամ շատ խոզի միս, մեկ ու կես անգամ շատ կաթ, քան հանձնվեց անցյալ տարի։ Մարզի կոլտնտեսությունները և սովխոզները այս տարի, անցյալ տարվա 22 հազար տոննայի դիմաց, պետությանը կհանձնեն 45 հազար տոննա միս և 220 հազար տոննա կաթ, անցյալ տարվա 145 հազար տոննա կաթի դիմաց։

Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի նման բարձր պարտավորություններ են ստանձնել նաև Սովետական Միության եղբայրական մյուս ռեսպուբլիկաների գյուղատնտեսության աշխատողները։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պարտավորություն են ստանձնել հացահատիկի մեկ հեկտարից ստանալ 11 ցենտներ բերք (աշնանացանից՝ 12 ցենտներ), բամբակի համախառն բերքը հասցնել 35 հազար տոննայի, ծխախոտինը՝ 10.500 տոննայի, շաքարի ճակնդեղինը՝ 84 հազար տոննայի, կարտոֆիլինը 145 հազար տոննայի, խաղողինը՝ 93 հազար տոննայի, մսի արտադրությունը հասցնել 66 հազար

տոննայի, յուրաքանչյուր կովից ստանալ 1.350 կիլոգրամ կաթ (սովխոզներում՝ 2.300 կիլոգրամ), յուրաքանչյուր ոչխարից 2,8 կիլոգրամ բուրդ (սովխոզներում 3.5 կիլոգրամ), մեկ հավից՝ 70 ձու։

Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին կազմակերպված համաժողովրդական սոցիալիստական մրցումը գնալով ծավալվում է։ Ամեն օր գործարաններից ու ֆաբրիկաներից, կոլտնտեսություններից, սովխոզներից և մեքենա-տրակտորային կայաններից ուրախալի լուրեր են ստացվում սովետական մարդկանց անձնուրաց աշխատանքի մասին, ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու մասին։

Այս օրերին մեծ անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Նրանք ամենից առաջ պետք է ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանեն հարազատ Կոմունիստական պարտիայի և նրա ստեղծող ու առաջնորդ Վ. Ի. Լենինի կազմակերպող ու վերափոխող մեծ դերը։ Հարկավոր է ամենայն մանրամասնությամբ ունկնդիրներին պատմել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակության մասին, այն վճռական պայքարի մա-



սին, որ մղում են ՍՍՌՄ-ը և ժողովրդական դեմոկրատիայի երկրները խաղաղության ու ժողովուրդների անվտանգության համար։

Մեր ագիտատորների խնդիրն է նաև ընդհանրացնել և լայնորեն տարածել սոցիալիստական մրցության առաջավորների աշխատանքի փորձը։ Ո՞ւմ հայտնի չէ, որ մրցության մասնակիցներին միշտ էլ ոգևորում է աշխատանքի դրական օրինակը։ Թող մրցության յուրաքանչյուր մասնակից, յուրաքանչյուր ունկնդիր, հստակ պատկերացում ունենա առաջավոր փորձի մասին, ավելի մոտիկից իմանա, թե առաջավորներն ինչպես են կարողանում կատարել ու գերակատարել իրենց արտադրական պլանները, տնտեսել հումքը և էլեկտրաէներգիան։

Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու գործում խոշոր նշանակություն ունի աշխատանքում ետ մնացողներին ընկերական օգնության միջոցով առաջավորներին հասցնելը։ Ագիտատորների պատվի խնդիրն է՝ մրցության մասնակիցներին օգնել այնպես, որ բոլոր ունկնդիրները կատարեն իրենց խոստումը, որ բոլորը հասնեն բարձր ցուցանիշների և Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձը նշանավորեն աշխատանքային նոր հաջողություններով։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՏԵԽՆՈԼՈԳԻԱՅԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՄԱՆ ՄԱՍԻՆ

*Ս. ՄԵԺԼՈՒՄՅԱՆ, Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ*

*Երևանի պահեստամասերի գործարանի 2-րդ մեխանիկական ցեխի պետ Վ. Ստեփանյանը համարվում է գործարանի լավագույն ագիտատորներից մեկը։ Ավտոտեխնիկումն ավարտելուց հետո, 1949 թվականին գործարան գալով, ընկ. Ստեփանյանը անցած ութ տարիների ընթացքում դարձավ գործարանի տեխնիկական պրոգրեսի ականատեսը և ակտիվ մասնակիցը։ Այդ հանգամանքը հնարավորություն է տալիս նրան ավելի հետաքրքիր դարձնել ագիտացիոն զրույցները։*

*Օրերս առաջին հերթափոխի աշխատանքն ավարտելուց հետո 2-րդ մեխցեխի բանվորները հավաքվեցին ցեխի պետի կաբինետում, ուր ագիտատորը նրանց հետ զրույց ունեցավ նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիա-*



*յի արմատավորման գործում ձեռք բերված հաջողությունների և ցեխի հետագա անելիքների մասին։*

*Ագիտատորը համառոտակի պատմելով տեխնիկական պրոգրեսի գործում հայրենական արդյունաբերության ձեռք բերած հաջողությունների մասին, հանգամանորեն պարզաբանեց ցեխի կոլեկտիվի առջև դրված խնդիրները։ 1956 թվականին,— ասաց նա,— ցեխի կոլեկտիվի առջև կանգնած էր պատվավոր խնդիր՝ յուրացնել և սկսել ավտոմեքենայի մի քանի հիմնական դետալների արտադրությունը։ Ամբողջ կոլեկտիվի համերաշխ աշխատանքի շնորհիվ, ցեխը 1956 թվականի պետական պլանը կատարեց 100,1 տոկոսով։ Պլանի կատարմանը նպաստեց նոր կորպուսը շահագործման հանձնելու ուղղությամբ կատարվող աշխատանքի ճիշտ կազմակերպումը։ Այդ կորպուսում կատարվում են զուգահեռ աշխատանքներ, օրինակ, սարքավորումների մոնտաժումը, նոր արտադրանքի թողարկման յուրացումը, կադրերի պատրաստումը։ Աշխատատար և բարդ դետալների սերիական թողարկման յուրացումը և նախապատրաստությունը սկսելու համար ցեխի նախաձեռնությամբ կազմակերպվեց առանձին խումբ, որտեղ ներգրավվեցին ա-*

առաջավոր աշխատողները և նորարարները, օրինակ․ խառատ՝ Գ. Շարյանը, ցեխի վարպետ և պարտկազմակերպիչ՝ Ա. Հարությունյանը, դազգահի վրա աշխատող՝ Ռ. Հարությունյանը, կարգավորող՝ Ա. Անդրեասյանը և ուրիշներ։ Այնուհետև ագիտատորը պատմեց, թե նրանք Գորկու ավտոգործարանի օրինակով ինչպես արմատավորեցին բարդ պահեստամասերից մեկի՝ բլոկ-ատամնավոր անիվի պատրաստման նոր տեխնոլոգիան, որի հետևանքով նվազեց օպերացիաների աշխատատարությունը, և բարելավվեց նրա որակը։ Զրույցի ընթացքում ագիտատորը նշեց գործարանի տեխնիկական բաժնից ինժեներներ Ս. Մկրտչյանի և Մ. Բաբայանի լավ աշխատանքը, որոնք նոր պահեստամասերի արտադրության յուրացման և մասսայական թողարկման գործում օգնեցին արտադրության տեխնոլոգիայի հոսքային գծի կազմակերպմանը։

Տեխնոլոգիական նորությունների արմատավորումը և աշխատանքի կազմակերպման բարելավումը ցեխի կոլեկտիվին հնարավորություն է տվել յուրացնել պահեստամասերի նոր տեսակների արտադրությունը։

ՍՄԿՊ 20-րդ համագումարը արդյունաբերական ձեռնարկությունների առջև լուրջ



խնդիրներ դրեց հումքի և նյութեղենի տընտեսման ուղղությամբ։ Այդ կապակցությամբ ագիտատորը կոնկրետ օրինակներ բերեց, որ իրենց գործարանն այդ բնագավառում լուրջ հաջողությունների է հասել։ Գերակատարելով համախառն արտադրանքի պլանը,— ասում է ագիտատորը,— գործարանում միաժամանակ տնտեսվել է մոտ 30 հազար ռուբլու հումք և նյութեղեն։

Այդ նվաճումների որոշակի բաժինը ընկնում է նաև մեր ցեխին։ Այսպես, օրինակ, ակոսավոր լիսեռը պատրաստվում էր 42 միլիմետրանոց տրամագիծ ունեցող մետաղից, իսկ այժմ հիդրոսուպորտի կիրառման շնորհիվ պատրաստվում է 40 միլիմետրանոցով, որը թույլ է տալիս օգտագործել համապատասխան տրամաչափի մետաղ և յուրաքանչյուր պահեստամասի պատրաստման մեջ տնտեսել 400 գրամ մետաղ։

Պլանով նախատեսվում է տարեկան պատրաստել 100 հազար հատ ակոսավոր լիսեռ։ Ուրեմն, եթե ամեն մի պահեստամասի մեջ տնտեսվի 400 գրամ, ապա մեկ տարվա ընթացքում կտնտեսվի 40 տոննա լեգիրացված պողպատ։ Մեկ տոննա այդպիսի պողպատը արժե 1075 ռուբլի, հետևապես մի-

այն այդ մասի պատրաստման ժամանակ տնտեսվել է 47 հազար ռուբլի։

Արտադրանքի թողարկումն ավելացնելու գործում լուրջ խնդիրներից է նաև մեկ քառակուսի մետր արտադրական տարածությունից ավելի շատ արտադրանք ստանալը։ Մենք այդ բնագավառում նմանապես ձեռք ենք բերել դրական արդյունքներ։ Իր միտքը հաստատելու համար ագիտատորը օրինակ է բերում արագությունների փոխանցման տուփերի տեղամասում կատարված դազգահների վերատեղադրման մասին, որի շնորհիվ այժմ ռացիոնալ կերպով է օգտագործվում արտադրական տարածությունը։

Այդ նախաձեռնությունը հնարավորություն տվեց նույն արտադրական տարածությունում արտադրանքի թողարկումն ավելացնել 1,8 անգամ։ Եթե առաջ № 37 մասից մեկ ամսում պատրաստում էին ամենաշատը 10 հազար հատ, ապա կարճ ժամանակամիջոցում այն հասցրին 18 հազարի։ Միաժամանակ խոշոր չափերով իջավ արտադրանքի ինքնարժեքը։ Ամեն մի դետալի մեջ գործարանը տնտեսում է 56 կոպեկ, իսկ տարեկան 170 հազար հատ թողարկելու դեպքում միայն այդ տեղամասում կտնտեսվի 77 հազար ռուբլի։ Խոսելով աշխատանքի արտա-



դրողականության բարձրացման, արտադրանքի թողարկման ավելացման և պարապուրդների նվազեցման գործում, ինչպես նաև սարքավորումների վերանորոգման և նրանց շահագործման աշխատանքների ճիշտ դրվածքի մասին, ագիտատորը նշեց, որ անհրաժեշտ է բարձր որակով կատարել վերանորոգման աշխատանքները և գերազանց շահագործման հաշվին երկարաձգել միջվերանորոգման ժամկետները։ Զրույցի այդ մասն ավելի պատկերավոր դարձնելու նպատակով ագիտատորը թվաբանեց մրցության մի շարք առաջավորների, ինչպես, օրինակ, Ն. Գալստյանին, Կ. Կարապետյանին, Ա. Աբրահամյանին և ուրիշների, որոնք դազգահների շահագործման բնագավառում լավագույն հաջողությունների են հասել։ Գործարանում կազմակերպվել է «Մոսկվիչ» ավտոմեքենայի պահեստամասերի պատրաստման նոր ցեխ։ Մեր ցեխին,— շարունակում է ագիտատորը,— տրված է նոր առաջադրանք։ Նոր պահեստամասի թողարկում կազմակերպելով, մենք պետք է առավելագույն չափով օգտագործենք մեր դազգահները։ Միայն 1956 թվականին ցեխը ստացել է ավելի քան 35 միավոր բարձր արտադրողական սարքավորում։

Զգալիորեն ավելացել է ներգործարանային և ներցեխային տրանսպորտի պարկը. ձեռք են բերված և շահագործման մեջ են դրվում ինքնաթափ ավտոմեքենաներ, ավտոմատ բեռնիչներ, էլեկտրակարեր: Դա հնարավորություն է տվել զգալիորեն կրճատել բեռների տեղափոխումը ձեռքով, որի շնորհիվ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը:

Զրույցի վերջում ագիտատորը խոսեց ցեխում ոչ ռիթմիկ աշխատանքը լիկվիդացնելու մասին և այդ կապակցությամբ գործնական խորհուրդներ տվեց ունկնդիրներին:

Վերջացնելով զրույցը ագիտատորը նշում է, որ ցեխի կոլեկտիվի խնդիրն է՝ կենսագործելով ՍՄԿԿ 20-րդ համագումարի որոշումները և հատուկ ուշադրություն դարձնելով նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի յուրացման, արտադրության բարելավման վրա, լրիվ օգտագործել արտադրական կարողությունները, հայտնաբերել ներքին ռեզերվները և, բարելավելով արտադրական-տնտեսական ցուցանիշները, պատվով դիմավորել Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը:

Զրույցից հետո ունկնդիրներն ագիտատորին մի շարք հարցեր տվեցին, որոնց նա գոհացուցիչ պատասխան տվեց:

---



# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԿԱԹ ԵՎ ԿԱԹՆԱՄԹԵՐՔ ԵՐԿՐԻՆ

Ա. ԴԱՎԹՅԱՆ

Մեր ռեսպուբլիկայում քիչ չեն այն կոլտնտեսությունները, որոնք վեցերորդ հնգամյա պլանով սահմանված անասնապահական մթերքների արտադրության պլանները կատարելու են այս տարի:

Այդպիսի առաջավոր կոլտնտեսություններից է նաև Մարտունու շրջանի Վաղաշեն գյուղի Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը, որը անասնաբուծության զարգացման գործում նշանակալից հաջողությունների է հասել:

Այսպես, օրինակ, 1956 թվականին կոլտնտեսությունում անասնագլխաքանակի ավելացման պլանները կատարվեցին՝ խոշոր եղջերավորներինը՝ 119 տոկոսով, մանր եղջերավորներինը՝ 113 տոկոսով, խոզերինը՝ 197 տոկոսով և այլն:

Անասնաբուծության զարգացման հետ

միասին կոլտնտեսությունը անընդհատ ավելացնում է մսի արտադրությունը և միշտ ժամկետից շուտ կատարում մսի հանձնման բոլոր տեսակի պարտավորությունները գեր վիճակի անասուններով։ Օրինակ, կոլտնտեսությունը 1956 թվականին կատարեց նաև 1957 թվականի մսի հանձնումների տարեկան պլանները և այժմ պետությանը միս է հանձնում 1958 թվականի հաշվին։

Մսի արտադրությունն ավելացնելու գործում կոլտնտեսության այդ հաջողությունը բացատրվում է նրանով, որ այստեղ յուրաքանչյուր եռամսյակ որոշ թվով անասուններ դրվում են բտման տակ։ Կոլտնտեսությունը որոշակի հաջողություններ է ձեռք բերել կաթի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ. անցյալ տարի պլանով սահմանված 1900 կիլոգրամի փոխարեն, յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվեց 2095 կիլոգրամ կաթ։

Կոլտնտեսությունում վարելահողերի, խոտհարքի և արոտատեղի յուրաքանչյուր 100 հեկտար տարածության հաշվով պլանով նախատեսված 167 ցենտների փոխարեն ստացվեց 176 ցենտներ կաթ։

Կոլտնտեսության շատ առաջավորներ ավելի բարձր ցուցանիշների են հասել կովերի



կաթնատվության բարձրացման գործում։ Օրինակ, կթվորուհի Բավական Հակոբյանը իր խնամած ամեն մի կովի միջին կաթնատվությունը անցյալ տարի հասցրեց 2477 կիլոգրամի, Ալմաստ Եղիազարյանը 2342 կիլոգրամի, Սեդա Գալստյանը 2252 կիլոգրամի, Ծաղիկ Վարդանյանը 2106 կիլոգրամի և այլն, պլանով նախատեսված 1900 կիլոգրամի փոխարեն։

Կաթի արտադրությունը ավելացնելու գործում ձեռք բերած անցյալ տարվա այդ հաջողությունները ամրապնդվում են նաև ընթացիկ տարում։ Անցած վեց ամսվա ընթացքում պլանով նախատեսված 700 ցենտների դիմաց, կոլտնտեսությունում արտադրվել է 755 ցենտներ կաթ, կամ յուրաքանչյուր ֆուրաժային կովից արդեն կթվել է 589 կիլոգրամ կաթ, այն ժամանակ, երբ շրջանի կոլտնտեսությունները նույն ժամանակաշրջանում յուրաքանչյուր կովից կթել են 252 կիլոգրամ կաթ։

Յոթ կովկիթ անասնապահներ ընթացիկ տարվա անցած վեց ամսվա ընթացքում, պլանով նախատեսված յուրաքանչյուր կովից 570 կիլոգրամի դիմաց, արդեն կթել են 597—744 կիլոգրամ կաթ։

Ուսանելի է այս կոլտնտեսությունում կթվորների առաջավոր փորձը։

— Ես,— ասում է առաջավոր կթվորուհի Բավական Հակոբյանը,— կթու կովերին, մսուրային ամբողջ շրջանում, անձամբ ինքս եմ կերակրում։ Դա հնարավորություն է տալիս անհատական մոտեցում ունենալ յուրաքանչյուր կովի նկատմամբ։ Օրինակ, բարձրակիթ կովերին տալիս եմ ավելի շատ հյութալի և բազմապիսի կերեր։ Բացի այդ, կովերին կթում եմ միշտ նույն ժամերին, երեք հերթի և ամեն անգամ պաշտպանում եմ կովերի կթման նույն հերթականությունը։ Կիթը կատարում եմ արագ, իսկ կթից առաջ մասաժ եմ անում կովի կուրծքը։

Վաղաշեն գյուղի կոլտնտեսության առաջավոր փորձը, անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու բնագավառում չի արմատավորվում շրջանի մյուս կոլտնտեսություններում։

Շրջանում որոշ կոլտնտեսություններ թերակատարում են անասնապահական մթերքների արտադրության պլանները։ Օրինակ, Աստղաձոր գյուղի «Պայքար» կոլտնտեսությունը նույն պայմաններումն է գտնըվում ինչ Վաղաշենի կոլտնտեսությունը, դեռ ավելին, նրա հողային տարածությունները



ավելի բերրի են։ Սակայն Աստղաձորի կոլտնտեսության անասնապահության ցուցանիշները, ինչպես անցած 1956 թվականին, նույնպես և այս տարի խիստ ցածր են Վաղաշենի կոլտնտեսության ցուցանիշներից։

1956 թվականին եթե Վաղաշենի կոլտնտեսությունում 100 հեկտար հողային տարածության հաշվով արտադրվեց՝ միս 35,4 ցենտներ, կաթ՝ 176 ցենտներ, ապա Աստղաձորի կոլտնտեսությունում արտադրվեց միս՝ 31,2 ցենտներ, կաթ՝ 40 ցենտներ։

Աստղաձորի կոլտնտեսությունը յուրաքանչյուր կովից անցյալ տարի ստացավ 1052 կիլոգրամ կաթ, իսկ Վաղաշենի կոլտնտեսությունը՝ 2095 կիլոգրամ։

Անցած վեց ամիսների ընթացքում Աստղաձորի կոլտնտեսությունում ստացվել է կաթ՝ 216 ցենտներ, կամ յուրաքանչյուր կովից կթվել է 195 կիլոգրամ, իսկ Վաղաշենի կոլտնտեսությունում ստացվել է 755 ցենտներ կաթ, կամ ամեն մի կովից՝ 589 կիլոգրամ։

Անասնապահական մթերքների արտադրության ավելացման գործում Վաղաշենի կոլտնտեսության լուրջ հաջողություններից է նաև այն, որ այստեղ համարյա վերաց-

վել են անասունների անկումները և կովերի ստերջությունը: Այսպես, օրինակ, անցյալ տարի յուրաքանչյուր հարյուր կովից ստացվեց 94 հորթ, 100 խոզամայրից՝ 870 խոճկոր: Ամբողջ տարին ոչ մի մատղաշի կորուստ տեղի չունեցավ:

Ագիտատորները պարտիական կազմակերպությունների օգնությամբ պետք է տարածեն և արմատավորեն Վաղաշենի անասնապահների աշխատանքի առաջավոր փորձը իրենց կոլտնտեսություններում, որպեսզի Մարտունու շրջանի բոլոր կոլտնտեսականները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 40-րդ տարեդարձը դիմավորեն նոր հաջողություններով:

---

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

# ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԸ ԱՐԺԵՔԱՎՈՐ ԿՈՒԼՏՈՒՐԱ Է

Ռ. ՋՈՀՐԱԲՅԱՆ
Ագրոնոմ

Վեցերորդ հնգամյակի վերաբերյալ ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվներում խոշոր տեղ է հատկացված եգիպտացորենի արտադրության հետագա զարգացմանը որպես առավել բերքատու կուլտուրայի:

Ուշադիր և հոգատար վերաբերմունքի դեպքում այդ արժեքավոր կուլտուրան մեծ դեր կխաղա հանրային անասնաբուծությունը խտացված և հյութալի կերով ապահովելու գործում:

Ռեսպուբլիկայում եգիպտացորենի մասսայական մշակման առաջին երկու տարիների փորձը ցույց տվեց, թե նա ինչպիսի մեծ ազդեցություն է գործում անասնաբուծության մթերատվության բարձրացման վրա:

Ո՞րն է եգիպտացորենի արժեքը: Ամենից առաջ այն, որ նրա ինչպես կողրերից (հա-

տիկը), այնպես էլ ցողուններից արժեքավոր կեր է պատրաստվում անասունների համար և այդ տեսակետից չկա մի այլ ավելի սննդարար կուլտուրա, քան եգիպտացորենը։

Անասնաբուծության կարիքների համար օգտագործվող բոլոր տեսակի կերերից և ոչ մեկը այնքան հարուստ չէ կերային միավորների պարունակությամբ, ինչպես եգիպտացորենը։ Օրինակ, եթե մեկ կիլոգրամ վարսակը պարունակում է մեկ կերային միավոր, հաճարը՝ 1,18 կերային միավոր, գարին՝ 1,21, ապա եգիպտացորենի հատիկը՝ 1,34։ Դրա հետ միասին եթե հաշվի առնենք նաև այն, որ եգիպտացորենը գարու և հաճարի համեմատությամբ ավելի բերքատու է, ապա ակնհայտ կդառնան այն առավելությունները, որ ունի եգիպտացորենը։

Եգիպտացորենը որպես հատիկ հավաքելու դեպքում նույնիսկ օգտագործվում է կողրի միջուկը, որը կերային միավորների պարունակությամբ հավասարվում է այնպիսի խտացված կերերի, ինչպիսին է գարու և հաճարի թեփը։ Հասած կողրերի բերքահավաքից հետո մնացած եգիպտացորենի ցողունը մոտավորապես մեկ և կես անգամ ավելի կերային միավորներ է պարունակում, քան մյուս բույսերի ծղոտը։



Բայց պարտադիր չէ, որպեսզի կերային նպատակներով աճեցվող եգիպտացորենի կողրերը լրիվ հասունանան։ Կաթնա-մոմային հասունության շրջանում կողրերը ունեն նույնպիսի սննդարար արժեք, ինչպես և լրիվ հասունացման ժամանակ և շատ լավ սիլոսացվում են շնորհիվ շաքարի մեծ քանակի պարունակության։ Այդ ժամանակ ցողունը և թփերը պարունակում են առավել մեծ քանակի սննդանյութեր և նույնպես հիանալի կերպով սիլոսացվում են։ Այսպիսով, սիլոսի համար աճեցված եգիպտացորենը նույնպես հրաշալի կեր է։ Նրա լավագույն հատկությունը ոչ միայն նրա մեծ սննդարարության մեջ է, այլև նրանում, որ նա նպաստում է մյուս կերերի մարսմանը։

Եգիպտացորենի օգտավետությունը նաև այն է, որ նա ավելի քիչ աշխատանքային ծախսումներ է պահանջում և ավելի շատ արդյունք է տալիս։ Օրինակ, եգիպտացորենը կաթնա-մոմային հասունացման վիճակում սիլոսի համար հավաքելիս ծախսված մեկ մարդ-օրվա դիմաց տալիս է 441 կերային միավոր, իսկ շաքարի ճակնդեղը (արմատն ու փրերը) 68 կերային միավոր։ Հետևաբար, եթե անասուններր կերակրենք եգիպտացորենով, որ ստացվել է մեկ մարդ-օրվա դի-

մաց, ապա կարելի է ունենալ հետևյալ քանակությամբ անասնաբուծական մթերքներ՝ կաթնա-մոմային հասունացման ժամանակ սիլոսի համար հավաքված եգիպտացորենով կերակրելիս՝ 80 կիլոգրամ միս, 401 կիլոգրամ կաթ կամ 17,4 կիլոգրամ յուղ, եգիպտացորենի հասուն հատիկով կերակրելիս՝ 25,5 կիլոգրամ միս, 127 կիլոգրամ կաթ, կամ 5,5 կիլոգրամ յուղ։ Շաքարի ճակնդեղով (արմատով ու փրերով) կերակրելիս՝ 12,4 կիլոգրամ միս, 62 կիլոգրամ կաթ, կամ 3 կիլոգրամ յուղ։ Ահա, թե ինչպես է եգիպտացորենը վարձատրում աշխատանքը։

Այսպիսով, սննդարարությամբ եգիպտացորենի հատիկը խտացված կերերի մեջ չունի իրեն հավասարը, իսկ նրա ցողունն ու թփերը սիլոսային կուլտուրաների մեջ բռնում են առաջին տեղը։

Վերջին երկու—երեք տարիների պրակտիկան ցույց է տվել, որ եգիպտացորենը մեր ռեսպուբլիկայի համարյա բոլոր կոլտնտեսություններում կարող է տալ կաթնա-մոմային աստիճանի հասած հատիկներով կողրեր։

Արժանիվույն գնահատելով եգիպտացորենի բոլոր առավելությունները, ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ անցյալ տարի ստացան եգիպտացորենի առատ բերք։ Այս-



պես, Հոկտեմբերյանի շրջանի Տանձուտ գյուղի կոլտնտեսությունում եգիպտացորենի 6 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից միջինը ստացվել է 60 ցենտներ կաթնա-մոմային վիճակի հասած եգիպտացորենի կողր, իսկ 4 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 53,7 ցենտներ լրիվ հասունացած հատիկ։ Այդ նույն շրջանի Արևիկ գյուղի կոլտնտեսության 3,5 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքված է 71,4 ցենտներ կաթնա-մոմային հասունության կողր։ Հեկտարից վաթսունական ցենտներ եգիպտացորենի կողր է ստացվել Բամբակաշատի կոլտնտեսությունում, Հոկտեմբերի կոլտնտեսությունում՝ և այլն։

Նույնիսկ անջրդի պայմաններում եգիպտացորենի ցանքերից լավ արդյունք են ստացել Իջևանի շրջանի մի շարք կոլտնտեսություններ։ Այսպես, Թալայի կոլտնտեսությունը 20 հեկտար անջրդի հողերից ստացել է միջինը 27,3 ցենտներ եգիպտացորենի լրիվ հասունացած հատիկ, Ռևապլու գյուղի կոլտնտեսությունը 18 հեկտար տարածությունից հավաքել է 23,7 ցենտներ։

Բարձր բերքի վարպետները յուրաքանչյուր հեկտարից զգալիորեն ավելի շատ բերք ըս-

տանալով ապացուցում են, թե ինչքան մեծ են եգիպտացորենի բերքատվության ավելացման հնարավորությունները։ Այսպես, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարկ Օզյորնին յուրաքանչյուր հեկտարից ստացել է 223,8 ցենտներ եգիպտացորեն, այն ժամանակ, երբ վարսակի բերքատվության ռեկորդը կազմում է ամեն մի հեկտարից 41 ցենտներ։

Արտաշատի շրջանի Այգեստան գյուղի կոլտնտեսության փորձը ցույց է տալիս, որ միայն կերի բազայի ամրապնդումով և եգիպտացորենի ցանքերի ընդարձակման և բերքատվության բարձրացումով հնարավոր է ավելացնել անասունների մթերատվությունը։

Կոլտնտեսությունը անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 27 ցենտներ հատիկ, իսկ երկրորդ ցանքից՝ 250 ցենտներ կանաչ մասսա։ Կերի ճակնդեղի բերքատվությունը կոլտնտեսությունում բարձրացել է մինչև 300 ցենտների՝ յուրաքանչյուր հեկտարից, առվույտինը՝ մինչև՝ 86 ցենտների։ Դրա շնորհիվ 1956 թվականին յուրաքանչյուր կովից ստացվեց 1225 կիլոգրամ կաթ։ Համախառն կիթը 1953 թվականի համեմատությամբ ավելացավ ավելի քան երկու անգամ։ Հանրային տնտեսության աճի հետ մեկտեղ



բարձրացավ նաև աշխօրերի արժեքը և 1956 թվականին կազմեց 32 ռուբլի 90 կոպեկ, 1953 թվականի 12 ռուբլի 40 կոպեկի դիմաց։

Եգիպտացորենի բերքատվության բարձրացումը շատ բանով կախված է աշխատանքների մեքենայացումից՝ սկսած ցանքից մինչև բերքահավաքը։ Դրա համար անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել եգիպտացորենի քառակուսի-բնային եղանակով ցանք կատարելու վրա, որը նպաստավոր պայմաններ է ստեղծում մշակության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար։

Անցյալ տարիների փորձը ցույց է տալիս, թե ինչքան մեծ են ռեսպուբլիկայում եգիպտացորենի բարձր բերք ստանալու հնարավորությունները։

Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները և մոտենալով Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ծավալված մրցության մեջ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսականներն ու ՄՏԿ-ների աշխատողները շեշտակիորեն կավելացնեն գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, կապահովեն վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանի կատարումը։

---

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԴԵՄ ԱՄՆ-Ի ՔԱՅՔԱՅԻՉ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ՌՈԴԻՈՆՈՎ

«Նյու-Յորք Թայմս»-ի թղթակիցը, որը եղել էր Ֆորտ-Բրագգե քաղաքում (Հյուսիսային Կարոլինա նահանգ), իր թերթին հաղորդում էր. «Հանկարծակի այդ քաղաքն ընկած այցելուն կզարմանար, լսելով թե ինչպես բարձրահասակ ենթասպաները հրամաններ են արձակում լեհերեն, չեխերեն, ռուսերեն, գերմաներեն և այլ լեզուներով»:

Այդ զինվորականները, որոնց թղթակիցը տեսել էր Ֆորտ-Բրագգեում, որպես տուրիստներ չէին ժամանել այստեղ: Նրանք մտնում են Ամերիկայի Միացյալ Նահանգների զինված ուժերի զորքերի 77-րդ խմբավորման կազմի մեջ, որն ունի հատուկ առաջադրանք և կրում է «Ազատության համար մարտնչողների կորպուսներ» մեծադղորդ անունը: Նույնանման մյուս զորամասը, որը լիովին կազմավորվել և պատրաստ-



վել է նույնպես Ֆորտ-Բրագգեում, «հատուկ նշանակման զորքերի 10-րդ խմբավորումը», ինչպես հաղորդում էր օտարերկրյա մամուլը, արդեն գտնվում է Արևմտյան Գերմանիայում:

Ո՞ւմ են պատրաստում ԱՄՆ-ի զինված ուժերի այդ հատուկ կազմավորումներում: Այդ հարցին հանգամանորեն պատասխանում է «Նյու-Յորք Ուորլդ տելեգրամ էնդ Սան» թերթը: Այդ զորամասերում, հաղորդում է թերթը, պատրաստվում են այսպես կոչված պարտիզաններ, որոնք պատերազմի դեպքում գործելու են սոցիալիստական լագերի երկրների տերիտորիայում:

Դեռևս 1952 թվականին, նշում է «Նյու-Յորք Ուորլդ տելեգրամ էնդ Սան»-ը, Պենտագոնը (ԱՄՆ-ի ռազմական գերատեսչությունը) պարտիզանական պատերազմը համարեց «ինչպես սառը, այնպես էլ տաք պատերազմում կոմունիզմի դեմ պայքարի կարևոր մասը»: Այդ նույն ժամանակ ստեղծվեց պայքար մղելու հատուկ մեթոդների հարցերի վարչություն, որը հենց զբաղվում էր սոցիալիստական երկրներից փախածներին՝ իրենց հայրենակիցների դեմ պայքարելու համար պատրաստելու գործով:

ԱՄՆ-ի զինված ուժերի հատուկ զորամա-

սերում պատրաստվում էին նաև նրանք, ովքեր անցյալ տարվա աշնանը գտնվում էին Հունգարիայում տեղի ունեցած հակահեղափոխական խռովության մասնակիցների շարքերում։

Այդ կապակցությամբ բնորոշ են խորհրդային բանակի նախկին սերժանտ Յանոշ Վարգաշի ցուցմունքները։ Սանկտ-Գալլեն քաղաքում (Շվեյցարիա) ժուռնալիստների հետ ունեցած զրույցի ժամանակ, նա պատմեց, որ թվով 35 հունգարական էմիգրանտների հետ միասին 1956 թվականին նա անցել է վեցամսյա նախապատրաստություն Մոնտգոմերի քաղաքում (Ալաբամա նահանգ) ամերիկյան սպաների հրամանատարությամբ։ Հոկտեմբերի 22-ին այդ խումբը ինքնաթիռով ԱՄՆ-ից փոխադրվեց Արևմտյան Գերմանիա, որտեղից էլ նրանց գցեցին Հունգարիա, Դյերի շրջանը։ Հակահեղափոխության պարտությունից հետո Վարգաշը կենդանի մնացած մյուս չարդարարների հետ փախավ Ավստրիա։

Հատուկ ռազմական միավորումների ստեղծման հետ մեկտեղ մշտապես պատրաստվում և սոցիալիզմի երկրներն են ուղարկվում շատ լրտեսներ և դիվերսանտներ։

Ամերիկյան հետախուզության հավաքա-



տեղիներն են Արևմտյան Գերմանիան և Արևմտյան Բեռլինը։ Միայն Արևմտյան Բեռլինում հաշվվում են ավելի քան 80 հետախուզական կենտրոններ, որոնք քայքայիչ գործունեություն են տանում ԳԴՌ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ։ Դրանց թվին են պատկանում «Անմարդկայնության դեմ պայքարի խումբը», «Ազատ իրավաբանների հետաքննական կոմիտեն», «ԳՍԴՊ-ի Արևելյան բյուրոն» և այլն։

Գաղտնի չէ, որ բոլոր կենտրոնների գործունեության մեջ վճռական և ուղղություն ցույց տվող դերը կատարում է ամերիկյան հետախուզությունը։ Բավական է ասել, որ «Անմարդկայնության դեմ պայքարի խմբի» գլուխ է կանգնած ամերիկյան գործակալ Տիլլիխը։

Տիլլիխը մյուս քայքայիչ կազմակերպությունների պարագլուխների հետ միասին փորձում էր ԳԴՌ-ում կազմակերպել ընդհանուր գործադուլ։ Դավադիրները նույնիսկ կազմեցին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի բնակչությանն ուղղված կոչի նախագիծ, որը հավանություն գտավ ամերիկյան իշխանությունների կողմից։ Սակայն այդ պրովոկացիոն մտադրությունը չիրագործվեց։

Վերջին ժամանակներս մամուլում շատ փաստեր են հրապարակվել, որոնք անհերքելիորեն վկայում են այն մասին, որ ամերիկյան հետախուզությունն էր հանդիսացել Հունգարիայում հակահեղափոխական պուտչի նախապատրաստման և անցկացման գլխավոր կազմակերպիչը։

Սոցիալիստական երկրների դեմ Ամերիկայի Միացյալ Նահանգների կողմից տարվող քայքայիչ աշխատանքը իր մեջ է առնում նաև լայն պրոպագանդայի վարումը։ Այդ նպատակների համար ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջաններն օգտագործում են, մասնավորապես, Արևմտյան Գերմանիայում տեղավորված ռադիոկայանների սիստեմը։ Այդ սիստեմի մեջ, որը կոչվում է «Ազատ Եվրոպա», գործում են 29 ռադիոկայաններ։ Դրանք կանոնավոր կերպով սոցիալիստական երկրների համար հաղորդումներ են տալիս, նրանց մասին տարածելով ամեն տեսակի կեղծիք ու խաբեություն, կոչ անելով հանդես գալ օրինական իշխանությունների դեմ, որոնք ընտրվել են այդ երկրների ժողովուրդների կողմից։

Ամերիկայի Միացյալ Նահանգների քայքայիչ աշխատանքը ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ լայն կազմակերպված



բնույթ է ընդունել։ Նա դարձել է ԱՄՆ-ի պետական քաղաքականության բաղկացուցիչ մասը։ Այդ գործունեությունն իր արտացոլումն է գտել, մասնավորապես, այսպես կոչված «փոխադարձ անվտանգության ապահովման մասին» օրենքի ընդունման մեջ։ Ըստ այդ օրենքի, որն ընդունվել է 1951 թվականին, ԱՄՆ-ի բյուջեից 100 միլիոն դոլար հատկացվեց Սովետական Միությունում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Հունգարիայում, Ռումինիայում, Բուլղարիայում և Ալբանիայում գործակալներ հավաքագրելու և դիվերսիոն խմբեր կազմակերպելու համար։ Այդ ժամանակից ի վեր ամերիկյան կոնգրեսն ամեն տարի բազմամիլիոն գումարներ է բաց թողնում սոցիալիստական երկրներում լրտեսություն և դիվերսիաներ կազմակերպելու նպատակով։ Սակայն դա միայն մի փոքրիկ մասնիկն է այն միջոցների, որոնք իրականում ծախսվում են ԱՄՆ-ի պետական օրգանների կողմից սոցիալիստական լագերի երկրներում քայքայիչ աշխատանք տանելու համար։ Բացի դրանից, այդ նպատակների համար վիթխարի միջոցներ են հատկացվում գաղտնի կերպով։ Ամերիկյան մամուլի վկայությամբ, այսպես կոչված «գաղտնի պատերազմի» համար ԱՄՆ-ի կատարած ամեն-

տրյա ծախսերը հասնում են միլիարդավոր դոլարների։

1955 թվականի գարնանը ԱՄՆ-ի պաշտոնական ինստանցիաներում մշակվեց այսպես կոչված «Համաշխարհային կոմունիզմի դեմ քաղաքական հարձակման ծրագիր»։ Ծրագրում նախատեսված են ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հակապետական խռովություններ կազմակերպելու համար զինված հակառևոլյուցիոն բանդաների կազմակերպումը, նրանց մատակարարումը և աջակցությունը։ Ծրագրում խոսվում է քայքայիչ աշխատանքը այնպես կազմակերպելու անհրաժեշտության մասին, որպեսզի ժողովրդական դեմոկրատիայի երկրների քաղաքացիներին դրդեն դավաճանել իրենց հայրենիքին։

Սպիտակ տան 1955 թվականի դեկտեմբերի 30-ի հատուկ հայտարարության մեջ մատնանշվում էր, որ սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդների այսպես կոչված «ազատագրումը» (այլ կերպ ասած, այնտեղ կապիտալիստների և կալվածատերերի իշխանության վերականգնումը) «եղել է, կա և մնում է ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության հիմնական նպատակներից մեկը մինչև



այն ժամանակ, քանի դեռ հաջողություն ձեռք չի բերվել»։

ԱՄՆ-ի հիմնական կառավարական օրգանը, որը մյուս երկրների նկատմամբ քայքայիչ աշխատանք է տանում, կենտրոնական հետախուզական վարչությունն է, որին ղեկավարում է Ալլեն Դալեսը։ Կենտրոնական հետախուզական վարչությունը իր հերթին ԱՄՆ-ի տերիտորիայում և նրանից դուրս ստեղծել է մի շարք կազմակերպություններ, որոնք զբաղվում են լրտեսական-քայքայիչ գործունեությամբ։ Սրանք կրում են մեծագլորդ կեղծ անուններ։ Դրանց թվին են պատկանում այնպիսի կազմակերպությունները, ինչպես «Խաչակրաց արշավանք հանուն ազատության», «Ազատ Եվրոպայի կոմիտեն», «Արտաքին հարաբերությունների գծով քաղաքացիների կոմիտեն» և մյուսները։ ՍՍՌՄ-ի դեմ աշխատանք տանող կազմակերպությունների և դիվերսիոն խմբերի գործունեությունը ղեկավարելու համար 1951 թվականին ստեղծվեց «Ռուսաստանի ժողովուրդների ազատագրության ամերիկյան կոմիտեն», որի շտաբ-բնակարանը գտնվում է Նյու-Յորքում։ Նույնպես Նյու-Յորքում է գտնվում «Ազատ Ռուսաստանի բարեկամների ամերիկյան ընկերություն» կազմակեր-

պության կենտրոնը։ Այդ կազմակերպության ֆիլիալները գործում են Արևմտյան Գերմանիայի մի շարք քաղաքներում, որտեղ ՍՍՌՄ ուղարկելու համար լրտեսներ և դիվերսանտներ են պատրաստվում։

Միացյալ Նահանգներում են գտնվում Ռումինական ազգային կոմիտեն, Բուլղարական ազգային կենտրոնը, «Ազատ Ալբանիա» կոմիտեն, Հունգարական ազգային խորհուրդը և լրտեսական-տեռորիստական բնույթի այլ կազմակերպություններ։

Սակայն Վաշինգտոնի և մի քանի այլ իմպերիալիստական երկրների մայրաքաղաքների բարձր շրջաններում պլանավորված լրտեսական-քայքայիչ բնույթի միջոցառումները անհաղթահարելի խոչընդոտների են հանդիպում։ Ձախողվեց Հունգարիայում կապիտալիզմը վերականգնելու փորձը, խափանվեցին միջազգային ռեակցիայի ջանքերը Լեհաստանի մի շարք քաղաքներում հակաժողովրդական ելույթներ կազմակերպելու ուղղությամբ, չհաջողվեցին դավադիրների մտադրությունները Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում անկարգություններ առաջ բերելու մասին, վնասազերծ են արվում սոցիալիզմի երկրների տերիտորիան գցվող գործակալները։



Պրոպագանդայի, դիվերսիայի և պրովոկացիաների միջոցով դեմոկրատական լագերի երկրներում ժողովրդական կարգը քայքայելու ուղղությամբ իմպերիալիստական հետախուզության փորձերը հանդիպում են աշխատավորների լայն մասսաների վճռական հակաազդեցությանը։ Բայց դա բնավ չի նշանակում, թե իմպերիալիստական տերությունները կհրաժարվեն սոցիալիզմի երկրների դեմ լրտեսական-քայքայիչ աշխատանք տանելուց։ Այդ պատճառով էլ մենք չպետք է մոռանանք զգոնության մասին։ Հարկավոր է միշտ հիշել այն մասին, որ մեր թշնամիները դիմում են ամեն տեսակի միջոցների, որպեսզի վարկաբեկեն և քայքայեն սոցիալիստական կարգը։

---

# Գ Ա Ն Ա

*Աֆրիկայի քաղաքական քարտեզը վերջերս մի նոր փոփոխության ենթարկվեց։ Այնտեղ երևան եկավ ևս մեկ անկախ պետություն՝ Գանան։ Այս տարվա մարտի 5-ին, Գանա պետության պաշտոնական հռչակման օրը, նրա պրեմյեր-մինիստր Կուամե Նկրուման հայտարարեց. «Երբ արշալույսը բացվի, մենք անցյալի գիրկը թողած կլինենք իմպերիալիզմի և գաղութակալության շղթաները, որոնք մինչև այժմ մեզ գամում էին Մեծ Բրիտանիային։ Կես գիշերին Գանան կվերադարձնի կորցրած ազատությունը»։*

*Իր ազատությունը Գանան կորցրեց 1482 թվականին, երբ պորտուգալական գաղութարարները Աֆրիկայի արևմուտքում գտնվող այդ երկրի տերիտորիայում հաստատեցին իրենց գաղութակալական գերիշխանությունը։ Ոսկու տենդով բռնկված պորտուգալական գաղութարարները հրի ու սրի մատնեցին ամբողջ երկիրը, որի ինքնատիպ կուլտուրայի և քաղաքակրթության արմատները գնում էին դարերի խորքը։ Այդ ժամանակ էլ գաղութարարները փոխեցին երկրի անունը և այն կնքեցին Ոսկե Ափ։ Գաղութակալությունը այդ չնաշխարհիկ երկիրը վերածեց հարստության աղ-*



*բյուրի՝ օտարերկրյա գավթիչների համար և ծայրահեղ աղքատության ու սարկության աղբյուրի՝ նրա բնիկ ժողովրդի համար։*

*Հետագայում պորտուգալացիներին այնտեղից դուրս մղեցին հոլանդացիները, իսկ սրանց էլ՝ անգլիացիները։*

*Սկսվեց Ոսկե Ափի արտակարգ հարստություններով օժտված էկոնոմիկայի գիշատիչ շահագործումը։ Այդ երկրի նկատմամբ գաղութարարների հատուկ հետաքրքրությունը մեզ համար պարզ դարձնելու համար տեսնենք, թե նա ինչպիսի՞ աշխարհագրական և տնտեսական բնութագիր ունի։*

*Ոսկե Ափը, ինչպես վերևում ասվեց, գտնվում է Աֆրիկայի արևմտյան ափին։ Նա սահմանակցում է Ֆրանսիական Արևմտյան Աֆրիկային և Ֆրանսիայի ու Անգլիայի գերիշխանության տակ գտնվող Տոգոյին։ Երկրի տարածությունը կազմում է 203,7 հազար քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ 3 միլիոն 700 հազար մարդ (1948 թվականի տվյալներով)։ Մայրաքաղաքն է՝ Ակկրան։ Տնտեսության հիմնական ճյուղերն են՝ միակողմանի զարգացած գյուղատնտեսությունը և լեռնամշակման արդյունաբերությունը։ Գյուղատնտեսության մեջ գլխավորապես մշակվում է կակաո, որը երկրի ցանքատարածություններից դուրս է մղել ժողովրդական սպառման համար անհրաժեշտ մյուս գյուղատնտեսական կուլտուրաները։ Դրա պատճառով երկրում զգացվում է գյուղատնտեսական մթերք-*

ների խիստ պակաս և հաճախակի լինում է սով։ Կակաոի արտադրությամբ Ոսկե Ափը աշխարհում գրավում է առաջին տեղը։ Բացի կակաոից արտահանության նպատակներով այնտեղ մշակվում են նաև յուղատու և կոկոսյան արմավենիներ, բանան, կոլա-ընկույզ և այլ արևադարձային կուլտուրաներ։ Անասնապահությունը տարածված է երկրի միայն հյուսիսային շրջաններում։ Արևադարձային անտառների շրջանում զարգացած է անտառամշակությունը։

Հանքային հանածոների մեջ առաջին տեղը պատկանում է ոսկուն, որը կազմում է Ոսկե Ափի արտահանության 15—20 տոկոսը։ Բացի դրանից, երկրում կան մարգանեցի հարուստ հանքեր, որոնք գտնվում են ամերիկացիների ձեռքում, Բիրրիմ և Բոնզա գետերի ափերին կա ալմաստ։ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներից սկսած՝ արդյունահանվում են նաև բոքսիտներ։

Ոսկե Ափի գյուղատնտեսության և արդյունաբերության միակողմանի զարգացումով էլ պայմանավորված է նրա արտաքին առևտրի բնույթը։ Արտահանության հիմնական տեսակներն են ոսկին, կակաոն, մարգանեցի հանքաքարը, ալմաստը, անտառանյութը։ Ներմուծվում է բամբակյա գործվածքեղեն, մետաղյա իրեր, պարենամթերք, նավթամթերք։

Երկրի էկոնոմիկայի ինտենսիվ շահագործման շնորհիվ անգլիական և ամերիկյան մոնոպոլիստները լրացուցիչ կերպով ամեն տարի ստանում էին մի քանի



միլիարդ դոլարի և ֆունտ ստեռլինգի գերշահույթներ։ Այդ է պատճառը, որ իմպերիալիստները ամեն կերպ փորձում էին հավերժացնել իրենց տիրապետությունն այդ երկրի վրա։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հետևանքով առաջացած ազգային-ազատագրական շարժումների հզոր ալիքը, որը ծավալվեց և նոր թափ ստացավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, լրջորեն ցնցեց գաղութային տիրապետությունն այդ երկրում։ Զինված ընդհարումները գաղութարարների և բնիկների միջև, բողոքի ցույցերը, գործադուլները դարձան սիստեմատիկ երևույթ։ Անգլիական իմպերիալիստները վախենալով լիովին զրկվել այդ ոսկեբեր աղբյուրից, դիմեցին մանևրի։ 1950 թվականին նրանք մշակեցին մի կոնստիտուցիա, որը տեղացիներին իրավունք էր տալիս ընտրել ներկայացուցչական օրենսդիր օրգան և ստեղծել ազգային կառավարություն։ 1951 թվականի փետրվարին կայացած օրենսդիր ժողովի ընտրությունների ժամանակ հաղթանակ տարավ ազգային բուրժուազիայի շահերն արտահայտող ժողովրդական պարտիան, որը ստացավ 35 տեղ։ Կազմվեց կառավարություն, որի 11 անդամներից վեցը պատկանում էին այդ պարտիային։ Պրեմյեր-մինիստր նշանակվեց պարտիայի պարագլուխ Կուամե Նկրուման։ Գաղութարարների հույսերը չարդարացան։ Ազգային կառավարությունը ոչ միայն ամրապնդեց ազատագրական շարժման ձեռք

բերած հաջողությունները, այլև նոր թափ հաղորդեց այդ շարժմանը։ Նրա կառավարման վեց տարիների ընթացքում անցկացվեցին մի շարք դեմոկրատական միջոցառումներ՝ մտցվեց ընդհանուր ընտրական իրավունք, կատարվեց իշխանության տեղական օրգանների ռեֆորմ, որի շնորհիվ անգլիական ծառայողների նշանակալի մասը փոխարինվեց աֆրիկացիներով, ստեղծվեց ազգային բանկ և այլն։

1954 թվականին կազմվեց նոր կառավարություն, որն այս անգամ լրիվ բաղկացած էր աֆրիկացիներից։ Ազգային-ազատագրական շարժման ծանր հարվածների տակ անգլիական գաղութարարները ստիպված համաձայնվեցին 1957 թվականին քաղաքական ազատություն տալ Ոսկե Ափին։ Եվ ահա այժմ աֆրիկյան այդ փոքրիկ երկրի ժողովուրդն ընդմիշտ ազատագրված է գաղութային դարավոր ստրկությունից։ Նոր ստեղծված պետությունը վերականգնեց իր ազգային պետական անունը՝ Գանան։ Նրա ղեկավարները հայտարարեցին, որ իրենց երկրի արտաքին քաղաքականությունը հիմնվելու է երեք սկզբունքների վրա՝ արժանապատվություն, խաղաղություն և բարեկամություն։ Պետության հռչակումից մի քանի օր անց, նրա կառավարությունը դիմեց Միավորված Ազգերի Կազմակերպության մեջ ընդունվելու համար։ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XI սեսիան, քննարկելով այդ դիմումը, միաձայն Գանա պետությանն ընդունեց ՄԱԿ-ի մեջ։

---



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԽՈՐՀՈՒՐԴ.— *Ստեղծվել է 1950 թվականի նոյեմբերին, Վարշավայում, խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսում։ Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը խաղաղության կողմնակիցների միջազգային շարժման լայն ներկայացուցչական ղեկավար օրգանն է։ Նրա կազմում կան 450 անդամներ, որոնք ներկայացնում են աշխարհի բոլոր ժողովուրդներին, այդ թվում նաև գաղութային և կախյալ երկրների ժողովուրդներին։*

*Այնտեղ ներկայացված են աշխարհի բնակչության ամենատարբեր սոցիալական խավերը, պարտիաները, պրոֆմիությունները, կազմակերպությունները, որոնք հանդես են գալիս հանուն խաղաղության։*

*Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը ունի բյուրո և քարտուղարություն, որոնք սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում ապահովում են դրանց որոշումների կենսագործումը։ Խորհրդի առաջին նիստում նրա նախագահ ընտրվեց ֆրանսիականականավոր գիտնական և հասարակական գործիչ Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին։*

Իր գործունեության մեջ Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը ղեկավարվում է հետևյալ հիմնական սկզբունքներով. տարբեր սոցիալական-քաղաքական սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորություն, բանակցությունների և բոլորի համար ընդունելի համաձայնագրերի միջոցով պետությունների միջև տարաձայնությունների կարգավորում, ժողովուրդների ինքնորոշման իրավունքի հիման վրա պետությունների ներքին գործերի չմիջամտում։

Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը իր գործունեության առաջին իսկ քայլերից լայն ճանաչում գտավ բոլոր երկրների աշխատավորների մեջ։ Նրա առաջին սեսիան, որը կայացավ Բեռլինում (1951 թվականի փետրվար), ընդունեց մի կոչ հինգ մեծ տերությունների՝ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի միջև Խաղաղության Պակտ կնքելու մասին։ Այդ սեսիան խաղաղության համար պայքարող բնակչության դիմումների հավաքման համաշխարհային կամպանիայի սկիզբը դրեց։ Խաղաղության Պակտ կնքելու մասին Բեռլինի Կոչի տակ ստորագրեց 612 միլիոն 522 հազար 504 մարդ։

1955 թվականի հունվարին Խաղաղության Համաշխարհային Խորհրդի բյուրոն ընդունեց մի կոչ ընդդեմ ատոմային պատերազմի նախապատրաստության, որի տակ այդ նույն թվականի օգոստոսի սկզբին հավաքվեց 656 միլիոն ստորագրություն։



**ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՖԵԴԵՐԱՑԻԱ.**— Ստեղծվել է Փարիզում կայացած արհմիությունների համաշխարհային կոնգրեսում՝ 1945 թվականին։ Համաշխարհային ֆեդերացիան աշխատավորների միջազգային դեմոկրատական կազմակերպությունն է, որն իր շարքերում միավորում է ավելի քան 88 միլիոն անդամ, աշխարհի 60 երկրներից։

Արհմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի գերագույն ղեկավար օրգանը Արհմիությունների Համաշխարհային կոնգրեսն է, որն ընտրում է Գլխավոր Խորհուրդ և Գործադիր Կոմիտե։ Արհմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի նախագահն է Ջուզեպպե Դի Վիտորիո (Իտալիա), գլխավոր քարտուղարը՝ Լուի Սայանը (Ֆրանսիա)։

Արհմիությունների Համաշխարհային ֆեդերացիան ունի մամուլի իր օրգանները՝ «Համաշխարհային արհմիութենական շարժում» ամսագիրը և «Ինֆորմացիոն բյուլետենը»։

Արհմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի գոյության առաջին իսկ օրերից նրա գործունեությունն ուղղված է դեպի միջազգային բանվորական միասնության ամրապնդումը, աշխատավորների սոցիալական և տնտեսական դրության բարելավումը, դեմոկրատիայի, խաղաղության և ժողովուրդների ազգային անկախության համար մղվող պայքարը։

Ֆեդերացիայի Գլխավոր Խորհրդի կայացած հերթական սեսիայում (1956 թ. հոկտեմբեր) կարևոր ո-

որոշումներ ընդունվեցին արհմիությունների գործողությունների միասնության հարցի, ատոմային զենքի արգելման, Սուեզի հարցի խաղաղ լուծման, բանվորական օրվա կրճատման, աշխատավորների միջազգային համերաշխության ֆոնդի կանոնադրության և այլ հարցերի մասին։

ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱ.— *Ստեղծվել է Փարիզում, կանանց միջազգային կոնգրեսում, 1945 թվականի դեկտեմբերին։*

*Ֆեդերացիան միավորում է 80 երկրների դեմոկրատական կազմակերպությունների մեջ մտնող կանանց, անկախ նրանց ռասայական, ազգային, կրոնական և պարտիական պատկանելիությունից։ Ֆեդերացիայի շարքերում հաշվվում է ավելի քան 200 միլիոն անդամ։ Ֆեդերացիայի բարձրագույն օրգանը՝ կանանց միջազգային կոնգրեսն է։ Կանանց Միջազգային Դեմոկրատական ֆեդերացիայի նախագահը Էժենի Կոտոնն է, գլխավոր քարտուղարը՝ Ա. Մինելլան։*

*Կանանց Դեմոկրատական ֆեդերացիան լույս է ընծայում «Աշխարհի կանայք» ամսագիրը, ինչպես նաև մասսայական բրոշյուրներ և բյուլետեններ։*

*Կանանց Միջազգային Դեմոկրատական ֆեդերացիայի նպատակն ու խնդիրներն են միավորել աշխարհի զանազան երկրների կանանց, անկախ նրանց ռասայական, ազգային, կրոնական, պարտիական պատկանելիությունից կայուն խաղաղության և ժողովուրդների սերտ համագործակցության, երեխաների առող-*



*ջության, կրթության և դաստիարակության բարելավման, պատերազմի վտանգից նրանց պաշտպանելու, պետական, հասարակական-քաղաքական և տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում կանանց իրավահավասար դրության համար։*

ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՖԵԴԵՐԱՑԻԱ.— *Ստեղծվել է դեմոկրատական երիտասարդության 1945 թվականի հոկտեմբեր—նոյեմբերին Լոնդոնում կայացած համաշխարհային կոնֆերանսում։ Ֆեդերացիան միավորում է աշխարհի 97 երկրների 86 միլիոն պատանիներ ու աղջիկներ։ Ֆեդերացիայի բարձրագույն օրգանը կոնգրեսն է։ Դեմոկրատական Երիտասարդության Համաշխարհային ֆեդերացիայի պրեզիդենտն է Բրունո Բերնինին (Իտալիա), գլխավոր քարտուղարը՝ Ժակ Դենին (Ֆրանսիա)։*

*Դեմոկրատական Երիտասարդության ֆեդերացիան հրատարակում է «Աշխարհի երիտասարդություն» ամսագիրը, որը լույս է տեսնում 14 լեզուներով, ինչպես նաև ինֆորմացիոն բյուլետեններ, բրոշյուրներ, պլակատներ, բացիկներ, օրացույցներ և այլն։*

*Միջազգային կապերի ընդլայնման, երիտասարդության փոխըմբռնողության և համագործակցության հաստատման համար Դեմոկրատական Երիտասարդության Համաշխարհային ֆեդերացիան կազմակերպում է դեմոկրատական երիտասարդության կոնֆե-*

րանսներ, իր հանձնաժողովներն ու պատվիրակությունները է ուղարկում առանձին երկրներ, անց է կացնում երիտասարդության ազատագրական պայքարի պաշտպանության կամպանիաներ, կազմակերպում է միջազգային փեստիվալներ։

Դեմոկրատական Երիտասարդության ֆեդերացիայի անցկացրած Պրագայի (1947 թ.), Բուդապեշտի (1949 թ.), Բեռլինի (1951 թ.), Բուխարեստի (1953 թ.) և Վարշավայի փեստիվալները հանդիսացան խաղաղության պաշտպանության համար հզոր ցույցեր։ Երիտասարդական վեցերորդ համաշխարհային փեստիվալը կկայանա այս տարի Մոսկվայում։

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 9** **1957 г.**

*ՎՖ 06264* *Պատվեր 370* *Տիրաժ 8.590*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.*